

# ՄԵԶ ՀԵՏ Է ԻԼՅԻՉԸ

*ՋԵՄՄԱ ՀԱՄՐԱԹՅԱՆ*

*(ՀԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեի երկրորդ քարտուղար)*

Պատանի բարեկամ, հունվարի 23-ին լրանում է Համամիութենական պիոներական կազմակերպությունը Վլադիմիր Իլյիչ Լենինի անունով կոչելու 40 տարին։

Կարմիր վզկապավորների 20 միլիոնանոց բանակը համարձակ կերպով այսօր կարող է ասել մեր սիրելի կոմունիստական կուսակցությանը և սովետական ժողովրդին, որ պիոներական կազմակերպությունը միշտ էլ հավատարիմ է մնացել Իլյիչի պատգամներին, որ պատանի լենինյանները սիրով են կրում ու արդարացնում այդ մեծ ու պատվավոր կոչումը։

Մեր մեծ հայրենիքի պիոներական կազմակերպության մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի պիոներիան, հիանալի գործերով է դիմավորում փառապանծ տարելիցը։ Պատանի լենինյանները մեծահասակների հետ միասին մասնակցում են կոմունիստական հասարակարգի կառուցմանը։ Նրանք ձգտում են հավասարվել իրենց ավագ բարեկամներին՝ կոմերիտականներին ու կոմունիստներին, օգնում են դասընկերներին, վերցնում են մանկապարտեզների շեֆությունը, աշխատում են կրտսեր դպրոցականների հետ, օգնում են փոստի, հեռագրատան աշխատողներին, մասնակցում են փողոցների կարգ ու կանոնի պահպանմանը, մետաղի ջարդոնի և թղթի մակուլատուրայի հավաքմանը, հանդես գալիս գեղարվեստական ինքնագործունեության համերգներով, օգնում գյուղատնտեսական աշխատանքներին։

Վեց ամիս առաջ ամփոփվեց ՍՄԿՊ 60-ամյակին նվիրված «Ում ջոկատն է ամենալավը» համամիութենական մրցության առաջին տարին։ Մեր հանրապետության բազմաթիվ պիոներական ջոկատներ այդ օրը զեկուցեցին իրենց լավագույն գործերի, նախաձեռնությունների մասին, մրցության մեջ ձեռք բերած հաջողությունների մասին։

Մրցության ընթացքում Հայաստանի պիոներական կյանքում ծնվեցին աշխատանքի մի քանի հետաքրքիր ձևեր ու մեթոդներ, ինչպիսիք են «Պարտադիր ուսուցման աջակցող» խմբերը, «Պիոներական շտապ օգնության» պոստերը, «Պիոներական լապտերիկների» շտաբները, ա-



ՀՈՒՆՎԱՐ
№ 1 1964 թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

վելի հետաքրքիր դարձան դրուժինային միջոցառումները, բատուգատեսները, կոնկուրսները, օլիմպիադաներն ու սպարտակիադաները: Ջոկատների մրցությունը մեծապես նպաստեց աշակերտների ուսման որակի բարձրացմանը. 117 դպրոցներ 1962-63 ուսումնական տարին փակեցին առանց երկտարեցիների:

Պատանի լենինյանների աշխատանքային դաստիարակության լավագույն միջոց հանդիսացան դպրոցամերձ հողամասերը, նրանցում տարվող փորձարարական աշխատանքները, աշակերտական արտադրական բրիգադները, դպրոցական շենքերի վերանորոգումը և սպորտային հրապարակների կառուցումները: Միայն անցած տարի դպրոցական շենքերի վերանորոգումից պետությունը տնտեսեց 200 հազար ռուբլի:

Այժմ Հայաստանում կա շուրջ 2000 «Յոթնամյակի արբանյակ» ջոկատ, իսկ շատերն էլ պայքարում են այդ պատվավոր կոչմանն արժանանալու համար:

Պիոներական ջոկատների մրցությունը լայն արձագանք գտավ Երևան, Դիլիջան, Կիրովական, Ալավերդի քաղաքներում, Անիի, Ապարանի, Արտաշատի, Ստեփանավանի արտադրական վարչություններում: Դիլիջանի № 19 գիշերօթիկ դպրոցի Պավլիկ Մորոզովի անվան ջոկատը ցույց տվեց ամենալավագույն օրինակը: Այստեղ պարզորոշ կերպով երևաց ջոկատների մրցության նշանակությունը:

Անցյալ ուսումնական տարվա սկզբին ջոկատի 20 պիոներներից 8-ը չէին առաջադիմում, բայց երբ սկսվեց ջոկատների մրցությունը, յուրաքանչյուր պիոների մեջ խոսեց ջոկատի պատիվը բարձր պահելու գաղափարը: Արդյունքը եղավ այն, որ ուսումնական տարին պիոներները փակեցին առանց երկտարեցիների:

Հետաքրքիր կյանքով են ապրում Ստեփանավանի Պուշկինի անվան ռուսական դպրոցի 10-րդ ջոկատի պիոներները, որոնք բարեկամական սերտ կապեր են հաստատել գորգագործական ֆաբրիկայի կոմունիստական աշխատանքի բրիգադի անդամների հետ, ծանոթացել են նրանց աշխատանքին և գրել ֆաբրիկայի, նրա կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների պատմությունը:

Կյանքը ցույց է տալիս, որ եթե քաղաքային, շրջանային պիոներական խորհուրդները լավ են օգնում պիոներական ջոկատներին, աշխատանքի վիճակը առավել բարվոք է լինում: Պիոներներն ընդունակ են շատ գործեր կատարելու, բայց նրանց միշտ անհրաժեշտ է ավագ ընկերների խորհուրդն ու օգնությունը: Ահա այդ նպատակով էր, որ Կիրովականի քաղաքային խորհրդի առաջարկով ծնվեց «Յուրաքանչյուր ջոկատին՝ իր բարեկամը» նախաձեռնությունը, որն արագորեն տարածվեց ամբողջ Հայաստանում: Այժմ Կիրովականում շուրջ 200 ջոկատներ ունեն իրենց ավագ բարեկամները, որոնց շարքերում են հին բոլշևիկներ, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, ինժեներներ, գրողներ, երաժիշտներ:

Վերջին շրջանում մեր պիոներական կազմակերպություններում մեծ աշխատանք է տարվում երեխաների արտադպրոցական դաստիարակության ուղղությամբ: Այդ տեսակետից ուսանելի փորձ է կուտակվել Երևանի 26 կոմիսարների շրջանում: Այստեղ բոլոր հասարակական օբյեկտները (գրադարաններ, ակումբներ, զբոսայգիներ) կոչված են ծառայելու դպրոցականների հանգստի կազմակերպմանը:

Ըստ բնակավայրի դպրոցականների հետ տարվող աշխատանքներում աչքի է ընկնում Լենինականի կազմակերպությունը:

Հայաստանի պիոներները լի են վճռականությամբ՝ սովորելու, ապրելու և պայքարելու Իլյիչի նման, կյանքում կենսագործելու Լենինի պատգամները:





# ԳԵՂԵՑԿՈՒԹՅՈՒՆ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Թափվում էր ձյունը,
Թափվում էր հանդարտ,
Թեթև սահում էր
Մշուշը կաթե
Ջմեռ էր, անտառ,
Ռուսական անտառ,
Խոր լռությունն էր
Ամենուր պատել։

Ծնկներից էլ վեր
Հասնող շերտը ձյան
Մեկը ճեղքելով
Գնում էր հանգիստ,
Որսորդ էր, ուներ
Ձեռքին հրացան

Եվ արջի մորթուց
Քուրք ուներ հագին։

Հաճախ ինքն իր հետ
Լուռ խոսում էր նա՝
Ջե՜, շա՜տ է ուրիշ
Բնությունը մեր,
Չկա՛ աշխարհում,
Ո՜չ մի տեղ չկա
Այսքան գեղեցիկ
Ու շքեղ ձմեռ։

Հանկարծ քիչ հեռվում,
Եղևնու տակ մեծ
Տեսավ մի եղնիկ
Վառ ու ոսկեգույն,
Նա հրացանը
Շտապով մեկնեց,
Բայց հետո... հետո
Իջեցրեց իսկույն։

Կանգնած էր այնտեղ
Եղնիկը հպարտ.
Կարծես ձյուներից
Արևն էր ծագել,
Նա երկարել էր
Վիզը քնքշաբար,
Անդորրության մեջ
Աչքերը փակել։

Նայում էր տարված
Որսորդը նրան,
Ուրախ զարկում էր
Սիրտը կրծքի տակ
Ու զարմանում էր,
Թե գեղեցկության
Վրա ինչպե՜ս են
Արձակում գնդակ։

Թափվում էր ձյունը,
Թափվում էր հանդարտ,
Ելնող արևից
Փաթիլն էր փայլում
Ջմեռ էր, անտառ,
Ռուսական անտառ,
Անտառով, հանգիստ,
Լենինն էր քայլում։

# ԿԱՐՄԻՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

Ն. ԽՈՋԱ

*Մայիսմեկյան շքերթն ավարտվել էր, բայց ժողովուրդը շարունակում էր կանգնած մնալ հրապարակում։ Բոլորն էլ գիտեին, որ հիմա ելույթ է ունենալու Լենինը։ Նրանք ուզում էին տեսնել Լենինին, լսել նրան։*

*Հանկարծ Կարմիր հրապարակ մտավ մի բեռնատար ավտոմեքենա՝ լիքը երեխաներով։ Նրանք անսովոր շորեր էին հագել։ Տղաներից մեկը գլխին դրել էր թուրքական ծոպավոր ֆես, մյուսը՝ չինական գդակ, իսկ երրորդը հնդկական չալմայով էր։ Մի տղա էլ բանվորի հագուստով էր և ձեռքին մուրճ ուներ։ Նրա կողքին կանգնածը մանգաղ էր պահել ձեռքում։ Թափքի կենտրոնում, կարմիր դրոշը ձեռքին, կանգնել էր մի աղջիկ։ Նա հագել էր վառ կարմիր թիկնոց, իսկ դրոշի վրա գրված էր. «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»։*

*—Ի՞նչ երեխաներ են սրանք, ո՞րտեղից են եկել,—հարցնում էին մարդիկ։*

*—Հնդկաստանից են,—ասում էին ոմանք և ցույց տալիս չալմայով տղային։*

*—Թուրքիայից են,—ասում էին ուրիշները և ցույց տալիս ֆեսավոր տղային։*

*Մի մարդ ձայն տվեց.*

*—Երեխանե՛ր, ո՞րտեղից եք եկել։ Ովքե՞ր եք դուք։*

*—Մենք պատանի կոմունիստների ջոկատի անդամներն ենք,—պատասխանեց տղաներից մեկը։*

*—Իսկ ինչու՞ եք այդպես հագել։*

*Կարմիր թիկնոցով աղջիկը պատասխանեց.*

*—Ես այսպես եմ հագել, որովհետև պատկերում եմ Պրոլետարական հեղափոխությունը։*

*Մուրճ բռնող տղան ավելացրեց.*

*—Նրա դրոշի տակ հավաքվել են բոլոր ճնշված ժողովուրդները. չինացիները, հնդիկները, թուրքերը։ Իսկ նեգր չունենք, որովհետև սև ներկ չկա րողացանք ճարել...*

*—Կեցցե՛ք, լավ բան եք մտածել,—գովում էին մեծերը։—Բայց ափսոս, որ Վլադիմիր Իլյիչը ձեզ չի տեսնի։ Նա հիմա պետք է ճառ ասի։ Ա՛յ այն ամբիոնից...*

*—Տղանե՛ր,—ամբողջ ձայնով գոռաց մանգաղ բռնող տղան։—Այստե՛ղ է ընկեր Լենինը։ Կանչենք մեզ մոտ։*

*Ավտոմեքենայի վրա կանգնածները միաբերան ասացին.*

*—Կանչե՛նք, կանչե՛նք։*

*Այդ ժամանակ հնդկական չալմայով ու չինական գդակով տղաները ցած թռան մեքենայից և անհայտացան ամբոխի մեջ։*

*Մինչև նրանք ճեղքեցին բազմությունը և հասան ամբիոնի մոտ, Լենինն արդեն սկսել էր իր ճառը։ Ամբիոնի շուրջը ժողովուրդն այնպիսի ամուր պատ էր ստեղծել, որ անցնելու ոչ մի հնարավորություն չկար։*

*Տղաները չգիտեին ինչ անեն։ Մի՞թե պիտի ետ վերադառնան։ Քիչ էր մնում լաց լինեին։ Հանկարծ*

քոլորն սկսեցին «ուռա» կանչել, և տղաները հասկացան, որ Լենինը վերջացրել է իր ելույթը... Նրանք նորից որոշեցին առաջանալ դեպի ամբիոնը։ Մարդիկ նայում էին նրանց և ծիծաղելով ասում.

—Ջալմայով այս տղան, իհարկե, Հնդկաստանից է եկել։ Իսկ սա, իհարկե, Չինաստանից է։ Ճամփա տվեք նրանց, երևի ուզում են տեսնել Լենինին։

Մարդիկ մի կողմ քաշվեցին, և տղաները առաջ անցան։

Վերջապես նրանք հասան ամբիոնի մոտ։ Բայց այստեղ նրանց կանգնեցրեց կաշվե բաճկոնով մի զինվորական։

—Ես հնդկերեն խոսել չգիտեմ,—նրանց ուշադիր զննելուց հետո ասաց զինվորականը։—Չինարենից էլ գլուխ չեմ հանում։ Միայն կասեմ, որ ամբիոն բարձրանալ չի կարելի։ Հասկանալի՞ է, չի՛ կարելի։

Տղաները ասացին.

—Ախր, մենք էլ չգիտենք ո՛չ չինարեն, ո՛չ հնդկերեն։ Մենք միայն պատկերում ենք ճնշված ժողովուրդներին։

—Իսկ ի՞նչ է ձեզ պետք, ընկե՛ր ճնշվածներ,—հարցրեց զինվորականը։

—Մենք ուզում ենք հրավիրել ընկեր Լենինին։ Մենք բեռնատար մեքենայով ենք եկել... Հեռու չէ... Այստեղ, հրապարակում։

Զինվորականը բացասաբար շարժեց ձեռքը.

—Ո՛չ, ո՛չ, ո՛չ։ Վլադիմիր Իլյիչն այսօր երեք անգամ արդեն ելույթ է ունեցել։ Նա շատ է հոգնել, թողեք հանգստանա։

Տղաները սկսեցին խնդրել.

—Գոնե թույլ տվեք տեսնենք ընկեր Լենինին։ Միայն տեսնենք ու գնանք։

Հանկարծ երեխաները շատ մոտիկից լսեցին մի ձայն.

—Ովքե՞ր են սրանք, ո՞ւմ են ուզում տեսնել։

Զինվորականը պատվի առավ և զեկուցեց.

—Սրանք ճնշված ժողովուրդներ են, ընկե՛ր Լենին։ Ուզում են ձեզ տեսնել։

Տղաները ասացին.

—Մենք ճնշվածներ չենք։ Մենք պատանի կոմունիստների ջոկատից ենք։

Լենինն արագ-արագ ցած իջավ ամբիոնից։

—Բարև՛ ձեզ, ընկե՛ր պատանի կոմունիստներ,—ասաց նա։—Ես արդեն լսել եմ ձեր ջոկատի մասին...

Տղաները իրար հերթ չտալով՝ ասացին.

—Երեխաները հանձնարարել են մեզ հրավիրել ձեզ... Մենք շատ ենք... Ավտոմեքենայի վրա... իսկ մեջտեղում կանգնած է Հեղափոխությունը՝ կարմիր դրոշով։

—Շատ հետաքրքիր է,— ասաց Լենինը։— Ես հաճույքով կտեսնեմ Հեղափոխությունը։ Գնանք



ցո՛ւյց տվեք ճանապարհը։—Եվ նա բռնեց երեխաների ձեռքից։

Երբ Լենինը մոտեցավ ավտոմեքենային, երեխաներն ամբողջ ուժով գոռացին. «Ուռա՛»... Լենինը օրորեց գլուխն ու ասաց.

—Մի՞թե դուք ինձ հրավիրեցիք նրա համար, որ լսեմ, թե ինչպես եք դուք «ուռա» ասում։

—Դա ուրախությունից է,— բացատրեցին երեխաները։—Էլ չենք ասի։

Պատանի կոմունիստները կարծում էին, թե Վլադիմիր Իլյիչը միայն կտեսնի ավտոմեքենայի վրա կանգնած երեխաներին, կարմիր դրոշով Դաշային՝ Հեղափոխությունը, և անմիջապես կգնա։ Բայց Լենինը չգնաց։ Նա սկսեց զրուցել երեխաների հետ։ Վերջում Լենինն ասաց, որ պատանի կոմունիստները պարտավոր են ամենուրեք օգնել բոլշևիկներին։

Երբ Լենինն ավարտեց իր խոսքը, երեխաները նորից գոռացին՝ «ուռա»։ Բայց իսկույն էլ լռեցին։ Դաշան ավելի վեր բարձրացրեց կարմիր դրոշը և սկսեց երգել.

Ելի՛ր, ով կյանքը անիծել է...

Երեխաներն անմիջապես ձայնակցեցին։ Նրանք երգում էին «Ինտերնացիոնալը»՝ կոմունիստական կուսակցության հիմնը։ Եվ նրանց հետ միասին երգում էր նաև Լենինը՝ համաշխարհային պրոլետարիատի առաջնորդը։

Ռուսերենից թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱԿՈԲԸ ԳՆԱՑ ՍԱՀԵԼՈՒ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



մռան մի գեղեցիկ օր Ծաղկաձորում հրացանիս փականակը, ոչ դես, ոչ դեն, փչացավ։ Բացատից իջա ցած՝ աղբյուրի տակ, որ փականակը կարգի գցեմ։ Տեսնեմ՝ հարևանիս տղան ոտքերը դրել է ջրի մեջ և, քափ ու քրտինք մտած, շերեփուկներ է որսում։

— Այդ ի՞նչ ես անում, Հակո՛բ,— ասում եմ ես, թեև տեսնում եմ, որ շերեփուկներ է որսում։

— Ձու՞կ եմ բռնում,— ասում է նա։— Իսկ դու որս խփե՞լ ես։

— Չէ՛, փականակը փչացավ։

— Հը՜,— քմծիծաղ է տալիս Հակոբը և շերեփուկը՝ չը՜փ, գցում է ամանի մեջ,— ձո՛ւկ բռնիր, ձու՜կ, որսը, քեռի՛ ջան, ամեն մարդու բան չի։

— Ա՜յ տղա, քո բռնածն էլ ոչ թե ձուկ է, այլ՝ շերեփուկ։ Նստել շերեփուկ ես որսում,— հազիվ ծիծաղս զսպելով հարձակման եմ անցնում ես,— դու դեռ այն ասա, դասերի՞ց ինչպես ես. վերաքննություններ, հո՛, ունես։

— Ո՞վ ասաց. և ոչ մի հատ,— վրա է տալիս Հակոբը։

— Բայց ձմռանը կարծեմ գործերդ այնքան էլ լավ չէին,— ասում եմ ես։

— Ե՞րբ։

Ես խորամանկորեն ժպտում եմ.

— Երբ հունվարի արձակուրդին հայրիկդ չթողեց, որ դահուկներով սահելու գաս։

— Դու այդ ո՞րտեղից գիտես։

Արդեն բռնել եմ, ինձ հարկավոր է, որ Հակոբը պատմի, թե ինչպես էր մեն-մենակ եկել Ծաղկաձոր, ու... մի խոսքով. հետաքրքիր պատմություն էր։

— Գիտեմ, գիտեմ,— ասում եմ ես ժպտալով,— ճի՞շտ է, որ ասում են, թե արջը հետևիցդ էր ընկել։

— Սու՜տ է,— վիրավորված վրա է բերում Հակոբը,— այդպիսի բան չի եղել...

— Բա ինչպե՞ս է եղել...

— Որ պատմեմ, քեռի՛ ջան, մի անգամ կտա՞ս հրացանդ կրակեմ,— հանկարծ անվստահ ասում է նա։

— Ինչու՞ չեմ տա. փականակը կարգի բերեմ, ուզում ես տաս անգամ կրակիր։

Ու մեր Հակոբը սկսում է պատմել...

— Երեք օր էր, ինչ անում էի, չէի անում, հայրիկս. թե. «Սրա՞ն տեսեք, Ծաղկաձոր գնա՞լ է ուզում։ Լավ է, նստիր ու «երկուսներդ» ուղղիր»։ Ես զգում էի, որ հայրիկս ճիշտ էր ասում, և մայրիկս էլ էր ճիշտ ասում, մենակ տատիկս էր իմ կողմը։ Բայց թե ես չլինեի, դուք լինեիք իմ տեղը, ինչպե՞ս կզգայիք ձեզ։ Մեր դասարանցիք արդեն երեք օր էր, ինչ եկել էին այստեղ։ Հիվանդացած Աշոտից բացի, քաղաքում ոչ ոք չէր մնացել։ Գիշերները երազումս տեսնում էի, թե տղաները ոնց են սահում։

Մի օր բան չկերա. ասացի. գուցե խղճան ու թողնեն։ Բայց ի՞նչ խղճալ. հենց նույն օրը հայրիկը, թե. «Նստիր կե՛ր, թե չէ, վեր կկենամ ու այդ դահուկները վառարանը կգցեմ»։ Դահուկները Աշոտից էի բերել։ Երկրորդ օրը տատիս մեջտեղ գցեցի ու այնպիսի մի աղմուկ բարձրացավ տանը, ասես հրդեհ էր ընկել։ Ես լաց եղա, տատս իմ հետևից, բայց հայրիկս. թե՝ «Երկինք էլ թռչես, բան չի դուրս գա»։

# ՁՄՌԱՆ ԵՐԳԸ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Ես ձմեռն եմ, ձմեռ ծեր.
Ճերմակահեր պապիկը ձեր։
Մորուք ունեմ՝ ամպի քուլա.
Բեղեր ունեմ՝ սառցի լուլա։
Թե զայրանամ՝ բուք կլինի.
Սառնամանիք, ցուրտ կլինի.
Խաղաղ լինեմ՝ ձյուն կտեղա.
Ժպտամ՝ արև ձեզ կշողա։

Ձմեռ պապն եմ ձեր ձյունահեր.
Գի՛րկս եկեք, իմ թոռնիկնե՛ր։
Ձյուն եմ բերել ձեզ ամպերից,
Թարմ եղևնի՝ անտառներից,
Խաղալիքներ տեսակ-տեսակ,
Նոր տիկնիկներ ոսկեգիսակ,
Ձմուշկ, դահուկ ու սահարան,
Որ սլանաք դուք անվարան...

Թե չշփվեք դուք ջրով պաղ,
Մարզանք չանեք առավոտ վաղ
Ու կատվի պես՝ հագած մուշտակ,
Փախչեք մտնեք սենյակը տաք,
Ձեզ չեմ սիրի, չեմ համբուրի,
Նոր նվերներ էլ չեմ բերի։
Իսկ թե լինեք ժիր ու խիզախ,
Ձյուների մեջ խաղաք անվախ,
Խինդ կցանեմ ձեր սրտերին,
Վարդ կբացեմ ձեր այտերին։

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Այդ գիշեր երազումս տղաները նորից եկան։ Դու՛, բոլո՛ր ջան, մեր դասարանցի Գագիկին չես ճանաչում. թողնես՝ մի գլուխ արան ու նրան ծաղրի։ Հա՛, այդ Գագիկը երազումս ինձ որ չըտեսա՞վ, մի՞ լեզու հանեց, մի՞ լեզու, ճիշտ դահուկի չափ։ Արթնացա, բայց էլ ի՞նչ քնել, քուն կտանի։ Երկար մտածեցի, գի. ասում եմ ինքս ինձ, հայրիկը եթե չի թողնում, իրավունք ունի, բայց մյուս կողմից էլ ինքս ինձ եմ պաշտպանում ու երդվում, որ երբ դասերս սկսվեն, այնպես եմ սովորելու, որ բոլորի աչքերն էլ բաց մնան։ Ուրեմն, ասում եմ, ինչու հիմա ընկերներիցս ետ մնամ։ Ու որոշեցի լույսը բացվի թե չէ, ճանապարհ ընկնեմ։

Առավոտյան հիշեցի գիշերվա որոշումս, բայց ի՜զուր։ Նախորդ օրվա անախորժ աղմուկ-աղաղակից, երկու օր կարգին բան չուտելուց և քիչ քնելուց, գլուխս ցնգում էր։ Քաղաքի վրա էլ այնպիսի գարշնագույն ամպեր էին կախվել, որ ասացի, ավելի լավ է, տաք անկողնուց դուրս չգամ։ Ու այսպես մտածում էի, երբ հանկարծ նորից հիշեցի գիշերվա երազս, Գագիկին, լավ սովորելու որոշումս և, որ գլխավորն է, տեսա, որ հայրիկս աշխատանքի է գնացել։ Ասրի թևս։ Մի կուշտ կերա, այնպես, որ տատիկս ուրախությունից լաց եղավ։ Համար առիթ էի փնտրում, որ դատարկեմ գիպսե կատվի փորը, որի մեջ հեծանիվի համար փող էի հավաքում։ Ծնողյանս տանից հայրիկիս տված մի ռուբլիանոցը ինկել էր անցքի դիմաց ու խանգարում էր կոպեկներին, բայց էլի երեք ռուբլու չափ դուրս քաշեցի։ Հանեցի, բայց, երբ դահուկները թևիս տակ դուրս եկա, միտքս նորից փոխվեց։ Ասես զգուշություն էր անում։ Աղջի՞վ խոսք, բոլո՛ր ջան, չէի գնա, եթե կայարան գնացող տրոլեյբուսը կողքիս չկանգներ։ Հասա կայարան։ Բանից դուրս եկավ, որ գնացքը արդեն մեկնել էր։ Որոշեցի դահուկները վերադարձնել Աշոտին ու տուն գնալ։ Նստեցի տրամվայ, բայց, տես որ տրամվայն էլ տարավ ուղիղ բժշկական ինստիտուտի մոտ, որտեղից ճանապարհ տանում է դեպի Ծաղկաձոր։ Իջնեմ՝ չիջնեմ, իջնեմ՝ չիջնեմ ու... բոլո՛ր ջան, իջա։ Հետո կամաց-կամաց հասա Հաղթանակի այգու տակ ու, ինչքան ձեռք էի բարձրացնում Ծաղկաձորի կողմը գնացող ավտոմեքենաներին, ոչ մեկը չէր կանգնում։ Վերջապես, դաշ տանող մի մեքենա կանգնեց։

— Ծաղկաձո՞ր,— ուրախ ձայնով հարցրեց նա։

Ես գլխով արի ու մոտեցա խցիկին, բայց տեսնեմ վարորդի կողքին տռզած թշերով մի մարդ կա նստած ու տանձ է ուտում։

— Վե՛րը նստիր, վե՛րը,— ասաց մեքենավարը։

Բարձրացա, լիքը գաջ: Ուրս գնելուն պես, բու՜ֆ, մինչև ծնկներս թաղվեցի գաջի մեջ ու, այն է, ուզում էի ձայն տալ, որ մեքենան պահի իջնեմ, դը՜ռ, գազը տվեց ու թռավ: Մի րոպե էլ չքաշեց ու, ես արդեն գաջափոշու ամպերի մեջ կորած, վը՜զ, թռչում էի առաջ ու, երբ որ չընկնելու համար ուզում էի ձեռքս գցել խցիկի տանիքի պատռված բրեզենտին, ճը՜ռ, բրեզենտի կտորն է ձեռքիս մեջ մնում: Մի խոսքով, երբ Հրազդան հասանք, ես իսկական ջրաղացպանի էի նմանվում: Հրազդանում իմացա, որ մեքենան այդտեղ էլ պիտի մնա: Ճարս ի՞նչ, ուզեի՝ չուզեի, պիտի Հրազդանից Ծաղկաձոր գնացող ավտոբուսին սպասեի: Սպասողներ շատ կային. բոլորն էլ խմբվել էին հենց այն մայթի վրա, որտեղ ջրի ծորակն էր: Բայց, հենց մեքենայից հեռացա, ավտոբուսի սպասողները ինձ տեսնելուն պես՝ մի այնպիսի հըռհըռոց դրեցին, որ ասել չի լինի:



Իսկույն հասկացա, թե բանն ինչումն է, ու ինձ գցեցի ջրի ծորակի տակ: Պաղ ջու՜ր, քամի՜, ու երեսս պուտում եմ, պուտում: Ես երեսս եմ պուտում, իսկ ավտոբուսի սպասողները ձեռ են առնում: Հենց այդպես, կես-անլվա, դահուկները խփեցի թևիս տակ ու բռնեցի Ծաղկաձորի ճամփան: Սառը քամուց երեսս տախտակ դարձավ ու աչքերս սկսեցին կուչ գալ: Թե ինչպես հասա Ծաղկաձոր, ինքս էլ չգիտեմ, միայն մի բան գիտեմ, որ, երբ հասա, մութն արդեն ընկնում էր:

— Քեռի՛ ջան, հերիք չէ՞ այսքանը,— հրացանիս խզակոթը շոյելով, անհամբեր ձայնով հարցնում է Հակոբը:

— Բայց փակաղակը դեռ կարգի չի ընկել,— ասում եմ ես:

Հակոբը՝ հուսահատված ծպպացնում է լեզուն ու աչքերը փակաղակին գցելով՝ շարունակում է պատմել.

— Քեռի՛ ջան, ես այստեղ երբեք չէի եղել, որ ասեմ, թե մենակ դահուկ քշելը լիներ, գուցե և չգայի, չեք հավատա: Ուզում էի Ծաղկաձորն էլ տեսնել, որի մասին այնքան լավ բաներ էի կարդացել: Ու բախտիս նայեք, որ ընկել եմ անծանոթ մի տեղ ու մութն էլ վրա է տալիս: Ի՞նչ անեմ, ընկերներիս մո՞տ գնամ, տուրբազա, չեմ ուզում: Այսինքն, եթե ուզենայի էլ՝ տեղը չգիտեի: Բացի դրանից, պիտի հարցնեին, հետաքրքրվեին՝ թե ինչպես եկա, ինչու հենց սկզբից կոլեկտիվի հետ չեկա և հազար ու մի բան: Շատ մտածեցի, բայց վերջն էլի ասացի մի տեսնեմ՝ ի՞նչ բան է այդ տուրբազան ու, մեկ էլ, շատ էի ուզում գոնե հեռվից ընկերներիս տեսնել: Որոշեցի: Բայց հիմա արի ու տուրբազա գտիր: Մութը կոխել է փողոցները, հատ ու կենտ մարդիկ, բայց սիրտ չեմ անում հարցնելու: Վերջապես գլխավոր փողոցը բռնեցի ու դուրս եկա ճաշարանի տակ: Ներսում կեր ու խու՜մ՝ իմ ուշքը քաղցից գնու՜մ է: Հանկարծ մեկը դուրս եկավ ճաշարանից: Հասա հետևից ու վախվխելով հարցրի: Վերջ ի վերջո, գլորվելով ու ցրտից սրթսրթալով մի կերպ հասա տուրբազա: Բայց ինչքան էլ լուսամուտների տակից գլուխս երկարացրի, մեր տղաներից ոչ-ոք չերևաց: Շների հաչոցից էլ զգում եմ, որ արդեն ուշ գիշեր է: Հանկարծ մի՜ վախ բռնեց ինձ, մի՜ վախ, որ ի՞նչ ասեմ: Ո՞րտեղ պիտի քնեի, ինչպե՞ս պիտի լուսացնեի գիշերը: Ու հիշեցի մերոնց տունը, տաք անկողինս: Նոր զգացի, թե ի՞նչ հիմարություն եմ արել. հիմա, ասում եմ, հայրիկս քաղաքում դես ու դեն ընկած՝ ինձ է փնտրում, մայրիկը երևի ուշաթափվել է, իսկ խեղճ տատիկը ծնկներին է տալիս: Ու, քեռի՛ ջան, մի՜ լաց բռնեց ինձ, մի՜ լաց, որ ի՞նչ անեմ: Լալիս եմ ու, դահուկները թևիս տակ ավլած մութ փողոցներով գնում:

Վերջապես կանգ առա. չէ՛, ասացի, լաց լինելով բան դուրս չի գա, մի տեղ գտնեմ, մինչև լույսը բացվի: Բայց տներում էլ լույսերը մեկ-մեկ հանգչում էին: Բախտի բան էր. հենց հասնում էի մի լուսավոր տան՝ խը՜թ, լույսը հանգչում էր: Վերջապես փողոցից ներս ընկած մի տուն գտա ու լուսամուտը բախեցի: Մեկ էլ, քեռի՛ ջան, մի հա՛ֆ-հա՛ֆ բարձրացավ, որ մազերս բիզ-բիզ կանգնեցին: Կպել եմ լուսամուտին ու վախից աչքերս չռած նայում եմ: Ի՞նչ տեսնեմ, մի ահռելի գամփռ, երախը բացած, հազիվ մի թիզ հեռու: Լավ էր, որ շղթայել էին: Բայց, դե ի՞նչ շղթա. քիչ է մնում, տեղահան անի: Թե լուսամուտի տակով աջ գնայի՝ դուրս անպայման բռնելու էր, ձախ գնալ էլ չէի կարող, որովհետև այդտեղ էլ ճամփան մի հսկայական տակառ էր փակում, որից թթու դրած կաղամբի հոտ էր գալիս: Ինչ անեմ, քեռի՛ ջան, մի կերպ, կամաց-կամաց բարձրացա տակառի վրա և ուզում էի ցած թռչել, երբ սահեցի ու... դը՜խկ, փռվեցի գետնին: Տանտերերն ասես դրան էին սպասում, որ նոր դուրս գային:

— Кто там? — խռպոտ ձայնով հարցնում է մեկը, բաց անելով դուռը:

— Это я,— ասում եմ ես,— Акоп!

— Какой Акоп?— ասում է նա:

Ես էլ ի՞նչ պատասխանեմ. մի կերպ վեր եմ կենում և դահուկներս տալիս թևիս տակ:

— А! Ночевать хочешь?— դահուկներս տես-նելով ասում է նա:

Ես, ընկե՛ր ջան, ճիշտն ասած, չհասկացա այդ «Նաչևատյա»-ն:

Լավ է, այդ մալականը հայերեն գիտեր: Ինձ տուն տարավ: Այնքան քաղցած էի ու սենյակն էլ այնքան տաք, որ մի տեսակ թմրեցի, ու միտքս միայն մի բան՝ ուտելն ու քնելն էր: Մալականը, որի անունը Մատվեյ էր, թե՝

— Բան ուտելու՞ ես:

Ես գլխով արի, ու նա դարձավ դեպի խորքի սենյակն ու՝

— Дуняша, давай что нибудь!

Լավի երբեք չեմ մոռել, բայց թե ո՞նց կերա: Երբ կերա վերջացրի, Մատվեյը թե՝



— Ուզում ես՝ ներսի սենյակում քնիր, ուզում ես, հենց այստեղ՝ վառարանի վրա:

Ես կինոներում շատ էի տեսել, թե ինչպես են ռուսները վառարանի վրա քնում ու մտքումս ասացի՝ տեսնենք ինչ բան է: Մատվեյը ձեռքերն ասպանդակ շինեց, ու ես մի կերպ բարձրացա վառարանի վրա: Մի բարձ տվեցին ու մի բամբակե կիսավերարկու: Քիչ հետո այնպիսի քրտինք տվեց վրաս, մի այնպիսի քրտինք: Վառարան չէ, այլ՝ դժոխքի բուրա: Իսկույն հիշեցի Նեսոյի բաղարաղնիքն ու վախից՝ կիսավերարկուն գետն գցեցի: Էլ քո՞ւն կտանի: Հա գնա ու գնա էի շուռ գալիս, մեկ շալվարս երեսիս ու վզիս քրտինքը սրբում, մեկ հորանջում: Վերջը մի կերպ քնեցի: Բայց լավ կլիներ՝ չքնեի: Գիշերվա կեսին արթնացա և ուզեցի դուրս գնալ: Ինձ թվում էր, որ տանն եմ և իմ մահճակալի վրա. ու երբ ոտքս չգցեցի, դը՛մփ, գլխիս վրա եկա ցած: Մի՛ ծիծաղիր, ընկե՛ր ջան, ինչու՞ ես ծիծաղում: Իմ ընկնելու վրա՝ ներսի սենյակից հասան Մատվեյն ու իր կինը, երկուսն էլ սպիտակ ներքնաշորերով: Դեռ գլխի չէի ընկել, թե որտեղ եմ ու այդ մորուքավոր Մատվեյին որ չտեսա, վախից սիրտս քիչ մնաց ճաքեր:

— Что случилось? Что случилось?— բղավեց Մատվեյը:

Ես նոր հիշեցի, թե որտեղ եմ... Վեր կացա ու քերծված ծնկներս բռնած՝ մի կերպ ինձ գցեցի աթոռի վրա: Մատվեյը մի բաժակ ջուր տվեց, խմեցի ու «վախ-վախ» անելով նորից բարձրացա վառարանի վրա:

Վերջապես աչքերս բացեցի ու, որ չտեսա լույ-սը բացվել է, ասես աշխարհն ինձ տվին: Կամա-ցուկ իջա վառարանից ու գնացի նաշտ, որ դա-հուկներս կարգի բերեմ: Բայց ի՞նչ. դահուկ չկա: Դես եմ նայում, դեն՝ չկա: Տեսնեմ՝ Մատվեյը մո-րուքը սանրելով՝ դուրս է գալիս ներսի սենյակից:

— Դահուկնե՞րս, - ասացի,—դահուկներս չկա՞ն:

— Ոչի՞նչ,— ինձ հանգստացնում է Մատվեյը,— Սերյոժկան տարած կլինի:

— Ո՞վ է այդ Սերյոժկան,— ասացի ես:

— Մեր տղան է, մեր տղան... — խեղճացած ասում է Մատվեյը: — Քո հասակին հազիվ լինի, շատ լավ տղա է:

— Այդ որտե՞ղ էր ձեր Սերյոժկան, բա ինչու՞ ես նրան չեմ տեսել,—վրա տվեցի ես, կարծես թե դրանով, այն է, դահուկներս ձեռքս էին տալու:

— Սերյո՞ժկան,— ասում է Մատվեյը,— ներսի օթախումն էր քնել: Դու որ եկար, նա քնած էր:

— Լավ, բա ես հիմա ի՞նչ անեմ,— վրա տվի ես, ավելի բարկացած, որ նա հանգիստ-հանգիստ է խոսում:

— Ի՞նչ արած, պիտի սպասենք, մինչև տուն դառնա: Սահելու է գնացել,— ասում է նա:

— Ո՞նց թե սպասենք,— բարկությունից քիչ է մնում լաց լինեմ,— տեղն ասեք, գնամ գտնեմ...
Իսկ նա էլ հանգիստ ժպտու՜մ է...

— Հիմա որտե՞ղից գտնես նրան, ով գիտի, երևի Հանքավան գնացած լինի. այնտեղ եղբոր տղա ունեմ, անունն էլ Կոլյա է։ Նա էլ հազիվ քո հասակին ըլի,— ավելացնում է նա, ասես մի շա՜տ կարևոր էր այդ Կոլյայի մասին իմանալը։

Վա՜յ, քեռի՛ ջան, ասես գլխիս տվին, ճա՛րս ինչ... Գլուխս կախ դուրս եկա ու այնքան էի հուսահատվել, որ շան հաչոցին էլ ուշադրություն չդարձրի ու հենց նրա կողքից կամաց-կամաց դուրս եկա փողոց։ Աչքիս ամեն ինչ սևացել էր։ «Վա՜յ, Սերյոժկա, վա՜յ,— ասում եմ,— դու հիմա դահուկներս ոտքիդ տակ դցած Հանքավանի ճամփին լինես, իսկ ես, այսքան տանջվելուց հետո, նստեմ ու քո ետ դառնալու՞ն սպասեմ...» Հա, քեռի՛ ջան, գլուխս առած գնացի ու գնացի և հասա այն տեղերին, որտեղ դահուկ են քշում։ Քաշվեցի մի ծառի տակ ու կուչ եկա, միտքս մեկ տունն է, մեկ Սերյոժկան, ու նայում եմ սահողներին։ Վա՜յ, ասում էի։ այսքան էլ թշվառությու՞ն...

Հակոբը լռում է. աչքի տակով նայում եմ նրան, բայց էլ չեմ ժպտում։

— Հետո՞,— հարցնում եմ ես։

— Էլ ի՞նչ հետո, քեռի՛ ջան, այդ Սերյոժկա ասածդ երևաց ուշ երեկոյան, բայց լավ էր չերևար... Դահուկներից մեկը ջարդել էր։

— Հետո՞, հետո՞,— ասում եմ ես, թեև զգում եմ, որ էլ Հակոբը պատմելիք չունի և, եթե կա, դժվար է պատմելը։

— Ասա՛, Հակոբ ջան, կարճ ասա։

— Խելոքացա...

— Տանը շա՞տ բարկացան։

— Առանց դրան կլինե՞ր...

— Ուրեմն զգու՞մ էիր, որ հիմարություն ես արել։

— Դե՛, ասացի, է՛լի, քեռի... խորը շունչ քաշելով ասում է Հակոբը քիչ լռությունից հետո.— Աշոտի դահուկներն էլ ավելցինք, հայրիկս նորն առավ։

— Իսկ դու հիմա ինքդ դահուկներ ունե՞ս,— հարցնում եմ ես ժպտալով։

— Ունեմ, քեռի՛ ջան,— պարծենում է Հակոբը,— երբ սկսեցի լավ սովորել, հայրիկն իսկույն գնեց։ Այս տարի ավելի հետ եմ գալու... Ա՜յ թե լավ կլինի, հա՜...

— Դե, իհա՜րկե, սրանից հետո ամեն ինչ լավ կլինի,— Հակո՛բ ջան,— ասում եմ ես ու, փամփուշտը խողովակի մեջ դնելուց հետո, հրացանը պարզում եմ նրան,— վերցրո՛ւ, կրակի՛ր։

Հակոբը դողդոջ ձեռքերով վերցնում է հրացանը, խողովակը դանդաղորեն ձգվում է վեր ու հանկարծ՝

— Բուու՜ֆ...

Բացատը և մոտիկ ձորակները արձագանքում են նրան.

— Բուու՜ֆ...




ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Դաշտը ծայրից ծայր
Ճերմակ շոր հագավ.
Տեսնես ո՞ւր փախան
Լորիկ ու կաքավ։
Հիմա որտե՞ղ են
Նրանք ծվարում.
Ձմեռն ինչպե՞ս են
Ուտելիք ճարում.
Թե նրանց տեղը
Ես իմանայի՛...
Ամենքին մի պարկ
Կորեկ կտայի.
Երանի՜ նրանք
Հենց այս առավոտ
Թև-թևի տված
Հյուր գային մեզ մոտ.
Այնքա՜ն տխուր է առանց հավքերի,
Առանց սուլոցի, առանց երգերի։
Գարնանը կգան
Սիրուն թևերով,
Որ դաշտ ու անտառ
Լցնեն երգերով։

Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

Այն ժամանակ, երբ Բենվենուտոն աշխատում էր նկարչին արթնացնել, նրա թիկունքում հայտնվեց պառավը.

— Դու այդ ի՞նչ ես անում այստեղ, չլինի՞ թե քուրջերից հետ ես խոսում:

— Ո՞ր քուրջերի հետ,— ժամանակ շահելու համար հարցրեց Բենվենուտոն:

— Ես հո պարզ լսեցի, թե դու ինչպես էիր խոսում՝ քո այդ ծակծկված գուլպաների կույտին դիմելով: Երևի դրանց անցքերն էիր հաշվում:

— Ճիշտ է, խոսում էի, ի՞նչ կա որ, բայց ես այդ չեմ նկատել,— քթի տակ մրմնջաց Բենվենուտոն:— Գիտե՞ք, ես շատ եմ հոգնել: Ամբողջ օրը ոտքերս հրելով թափառում եմ փողոցներում, իսկ իմ տարիքում դա բավական ծանր գործ է:

— Դե որ հոգնել ես, հանգստացիր,— կարեկցանքով ասաց պառավը:

— Ես հիմա կնստեմ,— ասաց Բենվենուտոն և նորից տեղավորվեց սայլակի բռնակին:

— Եթե թույլ տայիք, ես էլ մի փոքր կնստեի,— ասաց պառավը:

— Խնդրե՜մ, տեղավորվե՛ք, մի բռնակ էլ կա:

— Շնորհակալությու՛ն: Գիտե՞ք, գիշերապահներն էլ են հոգնում: Եվ պատկերացնո՞ւմ եք, ես երազում էի դաշնակահար դառնալ: Նվագել միշտ նստած, կայլերի լավ երաժշտության մեջ: Ես նույնիսկ դպրոցական շարադրության մեջ գրել եմ այդ մասին: Շարադրության թեման էր՝ «Երբ մեծանաք՝ ի՞նչ եք դառնալու»: Ես էլ գրեցի. «Երբ մեծանամ, կդառնամ դաշնակահար, կլինեմ բոլոր երկրներում և համերգներ կտամ. ինձ շատ կծափահարեն, և ես նշանավոր մարդ կդառնամ»: Բայց ես նույնիսկ զոդերի մեջ փառքի չարժանացա: Ինձ դեռ չի հաջողվել ոչ մի գող բռնել: Ի միջի այլոց, դուք, պատահմամբ գող չե՞ք:

Բենվենուտոն գլուխը բացասաբար շարժելով՝ հանգստացրեց նրան: Մեր ճամփորդը շատ էր ուզում այդ դժբախտ գիշերապահին որևէ մխիթարական բան ասել, բայց այլևս ուժ չուներ: Բենվենուտոն զգում էր, թե ինչպես է յուրաքանչյուր րոպեի հետ կյանքը հեռանում իրենից, բայց նրան ուրիշ ոչինչ չէր մնում անելու, քան լուռ ականջ դնել:

Իսկ գիշերապահը, հառաչելով, դեռ երկար պատմում էր իր աշխատանքի մասին, դաշնամուրի մասին, որ նա երբեք չէր ունեցել, պատմում էր իր երեխաների մասին:

— Ամենամեծը տաս տարեկան է,— ասում էր նա:— Երեկ նա էլ դպրոցում մի լավ շարադրություն գրեց: Ուսուցիչները միշտ էլ միևնույն թեմայով են շարադրություն հանձնարարում. «Ի՞նչ ես դառնալու, երբ մեծանաս»: Իմ տղան գրել էր. «Ես կդառնամ օդաչու և արբանյակով կթռչեմ դեպի Լուսին»: Ես սրտանց ցանկանում եմ, որ տղայիս երազանքն իրականանա, բայց մի երկու տարուց հետո ստիպված կլինեմ նրան ուղարկել աշխատանքի: Չէ՞ որ իմ ռոճիկը չի բավարարում, որ բոլորիս կերակրեմ: Դժվար է, չէ՞, հավատալ, որ նա կդառնա տիեզերագնաց:

Բենվենուտոն նորից գլուխը բացասաբար շարժեց: Նա դրանով ուզում էր ասել, որ պետք է հավատալ, որ աշխարհում անհնար ոչինչ չկա և երբեք չպետք է հուսահատվել: Բայց պառավը չնկատեց նրա գլխի շարժումը: Նա նայեց Բենվենուտոյի կողմը և նրան թվաց, թե ծերուկը քնած է:

— Խե՜ղճ ծերուկ,— շշնջաց նա,— իսկապես որ հոգնել է: Ինչ արած, շարունակենք մեր շրջագայությունը:

Պառավը հեռացավ ոտների թաթերի վրա քայլելով, որպեսզի աղմուկ չհանի, իսկ Բենվենուտոն շարունակում էր մնալ նստած՝ առանց շարժվելու: Նա ուժ չուներ վեր կենալու:

— Այսպես կսպասեմ,— մեղմ հառաչեց նա,— կնստեմ մի քիչ: Ես ինչ որ կարող էի, արեցի: Բանանիտոն հիմա հեռու է վտանգից, իսկ խեղճ գիշերապահին հնարավորություն տվեցի մի լավ սիրտը դատարկելու:

Նրա մտքերը խառնվում էին, դառնում էին ավելի շփոթ: Նրան թվում էր, թե հեռվից երգի

---

Սկիզբը՝ նախորդ համարում:

ձայն է գալիս, կարծես օրորոցային էին երգում։ Բայց շուտով նա այդ էլ չէր լսում այլևս։

Այդ օրորոցային երգը, բարեկամներս, Բենվենուտոն երազո՞ւմ չէր լսում։ Այնպես պատահեց, որ Ջելսոմինոն, իր սովորության համաձայն, քնի մեջ սկսեց երգել։ Նրա ձայնը աստիճաններով գլորվեց ցած, հասավ նրբանցք և Բանանիտոյին արթնացրեց։

— Բենվենո՜ւտո,—քուրջերի միջից քիթը դուրս հանելով՝ ձայն տվեց նա։— Բենվենո՜ւտո, որտե՞ղ ենք մենք։ Ի՞նչ է պատահել։

Բայց Բենվենուտոն չէր կարող պատասխանել։



Նկարիչը սայլակից ցած թռավ և մի երկու անգամ ցնցեց ծերուկին։ Խեղճի ձեռքը սառույցի նման պաղ էր։ Իսկ տանից շարունակում էր լսվել Ջելսոմինոյի հմայիչ ձայնը։ Քնքուշ օրորոցայինը ճախրում էր օդում և լցնում ամբողջ նրբանցքը։

Բանանիտոն աստիճաններով սլացավ վեր, արթնացրեց Ջելսոմինոյին, և նրանք երկուսով վերադարձան նրբանցք։

— Նա մահացե՞լ է,— բացականչեց Ջելսոմինոն։

— Մահացել է մե՛ր մեղքով, իր վերջին ուժերը ծախսելով մեզ համար, այն ժամանակ, երբ մենք հանգիստ, ոչ մի բանի մասին չմտածելով, քնել էինք։

Նրբանցքի ծայրում երևաց նույն գիշերապահը։

— Արի նրա տանենք,—շշնջաց Ջելսոմինոն։

Բայց նկարչի օգնության կարիքը չկար. Բենվենուտոն երեխայի նման թեթևացել էր, այնպես որ Ջելսոմինոն հեշտությամբ նրան տարավ ներս։

Գիշերապահը մի քանի րոպե կանգնեց դատարկ սայլակի մոտ։

— Ծեր հնոտեվաճառը, երևի, այստեղ է ապրում,— ասաց նա։— Հարկավոր է նրան տուգանել սայլակը ճանապարհի մեջտեղում թողնելու համար։ Բայց նա լավ ծերուկ էր, այնպես ցույց կտամ, որ այս նրբանցքով չեմ անցել։

Բենվենուտոյին թաղեցին երկու օր հետո այն իրադարձություններից, որոնց մասին դուք դեռ ոչինչ չգիտեք և որոնց մասին դուք կընթերցեք հետևյալ գլուխներում։ Հազարավոր մարդիկ էին եկել թաղմանը, բայց ո՛չ ոք ճառ չասաց, թեև նրանցից ամեն մեկն էլ կարող էր ելույթ ունենալ և պատմել հնոտեվաճառի բարի գործերի մասին։

Եվ հենց այդ թաղման ժամանակ էլ, իր կյանքում առաջին անգամ, Ջելսոմինոն երգեց առանց որևէ բան ջարդելու։ Նրա ձայնը առաջվա նման նորից ուժեղ էր, բայց հնչում էր ավելի քնքուշ, և բոլորը, ովքեր լսում էին նրան, զգում էին, որ ավելի բարի են դառնում։

Բայց մինչ այդ, ինչպես արդեն ասացի ձեզ, շատ դեպքեր եղան։ Նախ և առաջ Ջելսոմինոն ու նկարիչը նկատեցին Կաղլիկ-կատվի բացակայությունը։ Այդ խառը օրերի իրարանցման մեջ նրանք ուշադրություն չէին դարձրել դրա վրա։

— Նա ինձ հետ սայլակի մեջ էր,— ասաց Բանանիտոն։— Հետո, քուրջերի կույտի մեջ ես չէի կարող նրան նկատել։ Բայց, երևակայիր, ես լսեցի, թե նա ինչպես փռշտաց։

— Երևի նա դժբախտության մեջ է ընկել,— ասաց Ջելսոմինոն և ապա ավելացրեց.— Բոլորը ինչ-որ մի բան անում են, մենակ ես եմ պարապ մնացել։ Ես հազիվ կարողանում ջահերը ջարդել և մարդկանց վախեցնել։

Ոչ ոք դեռ նրան այդքան հուսահատ վիճակում չէր տեսել։ Սակայն հենց այդ րոպեին նրա գլխում մի հիանալի միտք եկավ.

— Չէ՞, դեռ մենք կտեսնենք, թե ես ինչի՛ եմ ընդունակ,— հանկարծ բացականչեց նա։

— Այդ ո՞ւր,— հարցրեց Բանանիտոն, նկատելով, թե ինչպես նա վեր կացավ և հագավ բաճկոնը։

— Հիմա իմ հերթն է,—պատասխանեց Ջելսոմինոն։—Տանից դուրս չգաս, քեզ փնտրում է ոստիկանությունը։ Դու դեռ իմ մասին կլսես։ Օ՜, արտասովոր նորություններ կլսես դու։

(Շարունակելի)

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱՊՏԵՐԻԿՆԵՐ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ



Հանքափորին՝ լապտերը վառ
Ճանապարհ է ցույց տալիս,
Իսկ վարորդը մութ անտառից
Լապտերով է դուրս գալիս:
Լայն փողոցում, սյունի վրա,
Լապտերներն են մեզ ժպտում,
Լուսավորում մարդու ճամփան
Աստղերի պես միշտ արթուն:
Լապտերիկներ կան սիրունիկ.
Տոնածառն են զարդարում,
Ինչպես փոքրիկ լուսատտիկ
Մեկ վառվում են, մեկ մարում:
Բայց ես գիտեմ վզկապավոր
«Լապտերիկներ» խելացի,
Որ աննկատ ու ամեն օր
Լույս են տալիս դպրոցին:
Աչքեր ունեն ամենատես,
Այնպե՜ս մաքուր, այնպե՜ս ջինջ,
Բարեկամ ու ընկեր են քեզ,
Լավ տեսնում են ամեն ինչ:
Եթե հանկարծ մի աշակերտ
Վերջին դասից փախչի տուն,
Նրա հարցը վաղը նեթ
Կքննվի ջոկատում:
Թե որ կոտրի չար Պետիկը
Դասարանի ապակին,
Բոլորից շուտ «Լապտերիկը»
Կնկատի անկարգին:
Ո՛չ մի անկարգ, ո՛չ մի փնթի,
Ո՛չ մի ծուլիկ ու անբան,
«Լապտերիկից» չի ազատվի,
Կբռնվի անպայման:

Քուչարի ջան, քուչարի,
Ուրախ ծափ տուր ու պարի,
Մի տե՛ս, անցավ հին տարին,
Դուռն է թակում Նոր տարին:

ԿՐԿՆԵՐԳ

Ջա՜ն, մեր սիրուն տոնածառ, } 2 անգամ
Լույսեր ունես դու պայծառ:

Ձմե՛ռ պապի, շո՜ւտ արի,
Բե՛ր մեզ ուրախ Նոր տարի,
Տոնածառը մեր գովենք,
Ուրախ ծափ տանք ու պարենք:

Ամսագրի 4-րդ էջում տպագրված երգի խոսքերը:

Արկադի Գայդարի
ծննդյան 60-ամյակի
առթիվ




ԲՈՐԻՍ ԵՄԵԼՅԱՆՈՎ

Չեմ հիշում, որտեղից էր ինձ մոտ ընկել արծաթյա հինավուրց այդ մատանին: Մի անգամ այդ մատանին տեսավ Արկադի Գայդարը: Նա երկար ժամանակ հետաքրքրությամբ դիտում էր մատանու քարի խորիմաստ փորագրությունը:

Մատանու ոլորուն նախշերը շրջափակված էին խունացած, կանաչ փիրուզներով: Մատանու ծանրաքաշ, քանդակազարդ օղագոտին քիչ ու ամուր գրկել էր նրանց: Այդպես առաջներում կոփում ու զարդարում էին ռազմական զրահները, որոնք գեղեցիկ ու պիտանի էին մարտերի համար:

Մատանին դուր եկավ Գայդարին: Նա վերցրեց այն ու անցկացրեց մատը:

Երբ մենք ինչ-որ գործով պատրաստվեցինք քաղաք մեկնել, Գայդարը չհանեց մատանին: Մեր միջև ընկերական մի այսպիսի պայման կար. վերցրեց, ուրեմն հարկավոր է: Ինչո՞ւ, ինչի՞ համար, երկա՞ր ժամանակով, թե՞ ոչ, հարցնել չէր կարելի:

Ստացվեց այնպես, որ օրվա վերջում, քաղաքում կատարած երկար շրջագայությունից հետո, մեր ծխախոտները վերջացան: Համարյա թե Գայդարի տան մոտ՝ Սադովայա փողոցում, մենք խնդրեցինք մեքենավարին կանգ առնել: Գայդարը դուրս եկավ մեքենայից և գնաց մոտակա կրպակը: Կրպակի մոտ կանգնած էին երկու տղա: Նրանցից մեկը նկատեց Գայդարի ձեռքի մատանին, հրեց ընկերոջը, և նրանք հետաքրքրությամբ սկսեցին աչք ածել ծանր մատանին:

— Հը՛, ինչպե՞ս է, դո՞ւր է գալիս, — հարցրեց Գայդարը տղաներին:

— Ըհը՛, դուր է գալիս,— անվստահ պատասխանեց տղաներից մեկը:

— Ուզո՞ւմ ես, տամ դնես մատդ,— հարցրեց Գայդարը:

Տղաները լռեցին:

— Միայն թե այս մատանին հասարակ չէ,— ասաց Գայդարը,—այլ՝ կախարդական: Եթե դուք սա ինձ չվերադարձնեք քառասուն րոպե հետո, ինձ հետ մի սոսկալի դժբախտություն կպատահի:

Այդ ասելով, նա հանեց մատանին և անցկացրեց տղաներից մեկի մատը: Գայդարը գնեց



ծխախոտները, թռավ մեքենայի մեջ, և մենք արագ պոկվեցինք տեղից։

Ես ափսոսացի մատանուն և շրջվեցի։ Տղաները վազում էին մեր մեքենայի հետևից և ինչ-որ բան էին բղավում։ Բայց այդ միջոցին նրանց ճանապարհը կտրեց մեծ և ծանր մի բեռնատար մեքենա, իսկ մերը թեքվեց մոտակա նրբանցքը։

Երկու օր հետո Գայդարը ինձ հեռախոսով զանգ տվեց.

— Եթե կարող ես, շտապ ե՛կ,— ասաց նա,— ինձ հետ շատ վատ բան է պատահել։

Ես բավականին անհանգստացա, նստեցի մեքենա և ուղիղ՝ Գայդարի մոտ։ Երբ ներս մտա, նա հուզված անցուդարձ էր անում սենյակի մի անկյունից մյուսը, իսկ երբ հարցրի, թե ինչ է պատահել, նա թախծոտ ու ցածր ձայնով ասաց.

— Քառասունութ ժամ է անցել, բայց այն տղաները չկան ու չկան, և քո մատանին, երևի, անհետ կորավ։

Մենք երկար ժամանակ նստել էինք դեմ-դիմաց։ Երբեմն նա անհանգիստ վեր էր թռչում տեղից, մոտենում էր լուսամուտին, նայում դուրս և, հետևելով ժամացույցի ընթացքին, հաշվում էր.

— Հիսունմեկ ժամ, հիսուներկու ժամ, հիսուներեք...

Ես անիծեցի և՛ մատանին, և՛ ինձ։ Ես զգում էի Գայդարի հոգեկան վիճակը։ Վերջ ի վերջո ես կորցրել էի մի արծաթյա խաղալիք, բայց Գայդարը կորցրել էր ավելին։

Ես աշխատում էի մոռանալ մատանին, իսկ նա միշտ հիշում էր և երկար ժամանակ մտածկոտ էր ու տխուր։

Մի անգամ նրա հետ մենք նորից մոտենում էինք տանը։ Փողոցի խաչմերուկում գտնվող լուսաֆորը ստիպեց մեր մեքենային մի պահ կանգ առնել, նույն այն ծխախոտի կրպակի առջև, որի մոտ տեղի ունեցավ այս չարաբաստիկ պատմությունը։ Վերջապես վառվեց կանաչ լույսը և առջևի մեքենաները դանդաղ շարժվեցին, իսկ մենք ընթացանք ամենից հետո։ Չգիտեմ ինչու ես ետ նայեցի ու տեսա, թե ինչպես Սադովայա փողոցը կտրեց ու անցավ բեռնատար մեքենան։ Եվ ամեն ինչ ես վերստին հիշեցի։ Հիշեցի մեր հետևից վազող տղաներին, մատանին և Գայդարին։

— Արկադի՛,— ասացի ես,— սպասի՛ր, իսկ տղաները որտե՞ղ պետք է բերեին մատանին։ Դու նրանց տվե՞լ ես հասցեդ։

Շատ տարիներ են անցել, բայց ես երբեք չեմ կարողանում մոռանալ այն պահը, երբ Գայդարը խլեց ձեռքս և ոգևորությունից այնպես սեղմեց, որ ես ճչացի ցավից։

— Մոռացե՛լ եմ,— բացականչեց նա։— Մոռացե՛լ եմ, ե՛ս՝ հիմա՛ր... Ես նրանց եմ սպասել, իսկ նրանք՝ ինձ։ Եվ գուցե ոչ թե հիսուներեք ժամ, այլ նույնիսկ ավելին։ Խեղճուկնե՛ր... Նրանք գուցե հիմա էլ փնտրում են ինձ։

Գայդարը անչափ գոհ էր։ Նա հաստատ հավատացած էր, որ, այնուամենայնիվ, քաղաքում մատանին ձեռքներին թափառում են փոքրիկ տղաները և փնտրում իրեն։

— Հինավուրց մատանին իսկապես որ կախարդական է,— ասում էր նա,— և մարդկանց ոչ թե դժբախտություն է բերում, այլ՝ ուրախություն։

1946 թվականին «Պիոներ» ամսագրում, Արկադի Գայդարի մասին եղած ուրիշ պատմվածքների հետ մեկտեղ, տպագրվեց նաև «Մատանին» պատմվածքը։

Ամսագիրն ուղարկվեց բաժանորդներին: Ես նրանցից սկսեցի բազմաթիվ նամակներ ստանալ: Երեխաները չէին հավատում, որ մատանին կորել է: Նրանք շարունակ հարցնում էին, ե՞րբ հայտնըվեցին տղաները մատանու հետ միասին, նրանք երկա՞ր ժամանակ են փնտրել Գայդարին, որտե՞ղ գտան նրան և ինչպե՞ս է դասավորվել տղաների կյանքը, լա՞վ, թե՞ վատ:

Իմ փոքրիկ ընթերցողները հաստատ համոզված էին, որ մատանին անպայման կգտնվի:

Մի անգամ, երբ ես երկար ուղևորությունից հետո տուն վերադարձա, իմ սեղանի վրա գտա հինավուրց արծաթյա մատանին:

Հին, կոտրված քարը թեքվել էր իր շրջանակում, բայց ես անմիջապես ճանաչեցի մատանու վրա հազիվ նշմարվող խազից:

Տանը ինձ ասացին, որ մատանին բերել են ինչ-որ երկու սպաներ: Նրանք հենց Գայդարին հանդիպած տղաներն են եղել:

Ամսագրում նրանք պատահմամբ կարդացել էին պատմվածքը, հասկացել էին ամեն ինչ և սկսել էին ինձ փնտրել Մոսկվայում:

Ութ տարի շարունակ նրանք փնտրել էին այն



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

անհայտ մարդուն, որը նրանց վստահել էր այդ թանկագին խաղալիքը, բայց գտնել նրան, իհարկե, այդպես էլ չէին կարողացել:

## ՀՈԿՎԱՐԻ ԴՊՐՈՑ

### Երրորդ դաս

Հոկտեմբերիկներին պետք է իրենց կանոնների հետ ծանոթացնել հենց առաջին տարում: Հանձնարարելի՛ է, որ ավագավարները հոկտեմբերիկների օգնությամբ յուրաքանչյուր կանոնի վերաբերյալ ընտրեն համապատասխան նկարներ: Ապա գեղեցիկ տառերով արտագրեք կանոնները և, ընտրած նկարների հետ միասին, փակցրեք դասասենյակում, որպեսզի հոկտեմբերիկները կամաց-կամաց անգիր սովորեն:

Բայց քո խնդիրը կայանում է ոչ միայն նրանում, որ հոկտեմբերիկները իմանան կանոնները, այլև՝ կատարեն:

«ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐՆ ԱՊԱԳԱ ՊԻՈՆԵՐՆԵՐ ԵՆ»,— ասում է առաջին կանոնը: Այդ նշանակում է, որ փոքրիկները պետք է իմանան, թե ովքեր են պիոներները, ինչի են նրանք ձգտում, ինչպես են աշխատում:

Նրանց խմբի շեֆությունը վերցրած ջոկատի պիոներները սովորաբար հոկտեմբերիկներին հրավիրում են իրենց հավաքույթներին, նրանց հետ կազմակերպում են միացյալ հավաքույթներ: Դրանից բացի, դու և ավագավարները հոկտեմբերիկներին պետք է պատմեք պիոներների մասին, կարդաք հոդվածներ և պատմվածքներ: Ապա հոկտեմբերիկներին ծանոթացրեք պիոներների մի քանի տրադիցիաների, պատմեք Լենինի անվան պիոներական կազմակերպության Պատվոգրքի մասին, այն մասին, թե ով և ինչի համար է մտցվում այդ գրքի մեջ:

Երրորդ դասարանի շատ հոկտեմբերիկների 10 տարին լրանում է երկրորդ կիսամյակում, և նրանք իրավունք են ստանում ընդունվելու պիոներական կազմակերպության շարքերը: Դու պետք է նրանց նախօրոք ծանոթացնես «Պատանի պիոներների օրենքների» հետ, պատմես պիոներական փողկապի և ողջույնի մասին, պատանի պիոներների հանդիսավոր խոստման մասին:

Երրորդ դասարանի հոկտեմբերիկների հետ կարելի է անցկացնել հավաքույթ՝ «Հոկտեմբերիկները ապագա պիոներներ են» թեմայով: Այդ հավաքույթում հոկտեմբերիկները կպատմեն և ցույց կտան այն ամենը, ինչ որ կատարել են ու սովորել պիոներական կազմակերպության շարքերն ընդունվելու նախապատրաստության շրջանում:

«ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԸ ԼԵՆԻՆ ՊԱՊԻ ԹՈՌՆԻԿՆԵՐՆ ԵՆ»,— ասված է կանոններում: Այդ պատճառով դու հոկտեմբերիկների համար պիտի պատմվածքներ կարդաս Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին, նրա ստեղծած կոմունիստական կուսակցության մասին, Լենինյան կոմերիտմիության մասին:

Հավաքույթներ ու զրույցներ կարելի է կազմակերպել ամեն մի կանոնի վերաբերյալ:



**Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

# ՔԻՄԻԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

*Ա. Վ. ՊԵՏԵՐԲՈՒՐԳՍԿԻ*
*(պրոֆեսոր)*

Մեր երկիրը հացահատիկ է ցանում ավելի քան երկու հարյուր միլիոն մարդու համար: Մինչև հիմա մենք տարեցտարի հացահատիկի բերքը շատացրել ենք գլխավորապես ցանքատարածությունների ընդարձակման շնորհիվ: Այժմ խնդիր է դրված



բարձրացնել յուրաքանչյուր հեկտար հողակտորի բերքատվությունը մինչև կրկնակի ու եռակի անգամ: Առաջիկա տարիներին հացահատիկի արտադրությունը պետք է ավելացվի 5—7 միլիարդ փթով, այսինքն նրա համախառն բերքը 1970 թվականին պետք է հասցվի 14—16 միլիարդ փթի:

Այս դժվար ու մեծ խնդիրը լուծելու համար մեզ օգնության է հասնում քիմիան: Հանքային ու քիմիական պարարտանյութերն են այն հիմնականը, որ տալիս է քիմիան գյուղատնտեսությանը:

Կար ժամանակ, որ աշխարհի բոլոր երկրներն ու հողագործները կախման մեջ էին Չիլիից: Այս երկրում է առաջին անգամ հայտնաբերվել ազոտական պարարտանյութը՝ սելիտրան: Չիլիական սելիտրան կտրում անցնում է օվկիանոսային տարածությունները և հասնում հողագնդի բոլոր անկյունները:

Երկու հարյուր տարի առաջ, երբ մարդիկ չէին օգտագործում հանքային պարարտանյութեր, հացահատիկի միջին բերքը հեկտարից կազմում էր ընդամենը 6 ցենտներ: Իսկ պարարտանյութերի շնորհիվ հեկտարից կարելի է ստանալ մինչև 30 ցենտներ հացահատիկ: Վեցի և երեսունի միջև տարբերությունը շատ մեծ է: Այդ էր պատճառը, որ չիլիական սելիտրան ոսկու գին ուներ:

Բայց եղան գիտնականներ, որոնք հաշվեցին ու գտան, որ Չիլիի սելիտրայի պաշարները կսպառվեն 1925 թվականին և մարդկությունը կործանման առաջ կկանգնի, մարդիկ կմեռնեն սովից: 1925 թվականից արդեն անցել է մոտ քառասուն տարի, սակայն մարդկությունը ոչ միայն սովամահության սպառնալիքի առաջ չի կանգնել, այլև ստեղծել ու ստեղծում է բազմաթիվ նոր պարարտանյութեր ու տարեցտարի ավելացնում է հացահատիկի բերքը: Ռուս ակադեմիկ Պրյանիշնիկովի հայտնագործած ամոնիակի սելիտրան այսօր ամենաարժեքավոր ազոտական պարարտանյութերից մեկն է: Իսկ դուք գիտե՞ք, որ այն ստացվում է օդից: Օդից ազոտ ստանալը շատ նուրբ արտադրություն է: Ազոտի գործարաններում գրեթե մարդիկ չկան, ամեն ինչ կատարվում է ավտոմատ կերպով:

Կա նաև ազոտական հեղուկ պարարտանյութ, որն իր մեջ պարունակում է 20—80 տոկոս ազոտ

Դուք պետք է իմանաք նաև մեկ ուրիշ, հրաշալի ազոտական պարարտանյութի մասին, որ նույնպես ստացվում է ամոնիակից. քսանհինգ մթնոլորտային ճնշման տակ ամոնիակը միանում է ածխաթթու գազի հետ: Բայց սա օրգանական նյութ է և չի օգտագործվում սոսկ որպես պարարտանյութ: Նաև լավ անասնակեր է:

Բույսերի կյանքում խիստ կարևոր դեր են խաղում նաև ֆոսֆորն ու կալիումը: Մեր երկրում կալիումական աղերի պաշարն ավելի մեծ է, քան աշխարհի բոլոր երկրների պաշարները միասին վերցրած: Բայց կալիումական պարարտանյութերի արտադրությունը դեռևս թանկ է նստում, և մեր գիտնականները ստացման նոր եղանակներ են որոնում: Ֆոսֆորի պաշարները նույնպես անսպառ են մեր երկրում, Կոլա թերակղզում գտնվում է աշխարհի ամենախոշոր ֆոսֆորային հանքը:

Չնայած այդ ամենին, մենք հանքային պարարտանյութեր քիչ ենք արտադրում. կես ցենտներ յուրաքանչյուր հեկտարին: Իսկ Հոլանդիայում մեկ հեկտարին տալիս են 10—12 ցենտներ հանքային պարարտանյութ: 1965 թվականին մեր երկրում գյուղատնտեսությանը կտրվի 35 միլիոն ցենտներ հանքային պարարտանյութ. ամեն մի հեկտարին մեկուկես ցենտներ, իսկ 17 տարի հետո՝ 4—5 ցենտներ:

Հրաշագործ քիմիայի օգնությամբ մեր գյուղատնտեսությունը է՛լ ավելի բարձր մակարդակի կհասնի, ստեղծելով գյուղատնտեսական մթերքների անսահման առատություն:

## ՔԱՂՑՐԻՑ... ԹԹՈՒ

Մինչև արդյունաբերության և այլ բնագավառներում լայնորեն օգտագործվող կիտրոնաթթուն մի ժամանակ ստանում էին միայն կիտրոնից։ Բայց դա շատ թանկ էր նստում և ձեռնտու չէր. չէ՞ որ կիտրոնի հյութն իր մեջ պարունակում է ընդամենը 6—7 տոկոս թթվայնություն։ Երկու կիլոգրամ կիտրոնաթթվի բյուրեղ ստանալու համար հարկ էր լինում՝ մշակել մի ամբողջ տոննա կիտրոն։ Երկար փորձերից հետո գիտնականները գտան, որ կիտրոնաթթու կարելի է ստանալ... շաքարից։ Այստեղ մարդկանց օգնության եկան անտեսանելի քիմիկոսները՝ մանրէները։ Սփռանման մեծ ամանների մեջ լցնում են սև սունկ և սնունդ են տալիս, որ բազմանան ու ծածկեն համատարած մի թաղանթով։ Այդ թաղանթի տակից դուրս են քաշում լուծույթը և «նոր» շաքարահյութ լցնում։ Այժմ արդեն «գործի» են անցնում սնկերը և շաքարահյութը դարձնում են կիտրոնաթթու։ Դա տևում է մինչև տասը օր։ Որից հետո սկսում են աշխատել իսկական քիմիկոսները։ Կավճի օգնությամբ նրանք կիտրոնաթթուն անջատում են հեղուկից, մաքրում և ստանում են բյուրեղանյութ։




Վերջերս կիտրոնաթթու են սկսել ստանալ նաև շաքարի ճակնդեղի մնացորդներից, որոնք օգտագործվում էր որպես անասնակեր. չէ՞ որ դրա 50 տոկոսը շաքար է։

## ԽՆՁՈՐԱԹԹՈՒՆ ԵՎ... ՔԱՐԱԾՈՒԽԸ

Բայց կիտրոնից կիտրոնաթթու ստանալը համեմատաբար ավելի ձեռնտու է, քան խնձորից՝ խնձորաթթու։ Մի քանի տարի առաջ Ուկրաինայի գիտա-հետազոտական ինստիտուտներից մեկում առաջարկ եղավ խնձորաթթու ստանալ բենզոլից, որն ստացվում է քարածուխ մշակելիս։ Փորձերը պսակվեցին հաջողությամբ։ Եթե սննդարդյունաբերության մեջ օգտագործվող թթուների ստացման համար որպես հումք ծառայում են սպիրտը, գինին, շաքարը, շաքարի ճակնդեղը, ապա խնձորաթթուն բացարձակապես քիմիական միացությունների արդյունք է։ Եվ լիմոնադ խմելիս ոչ ոքի մտքով անգամ չի կարող անցնել, որ այդ հաճելի խմիչքի պատրաստմանը մասնակցել են քարածխից ստացված բյուրեղները։

## ՆԱՎԹԻ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԻՑ

Ամեն ինչ սկսվեց թյուրիմացությունից։ Ադրբեջանի գիտությունների ակադեմիայի պրոֆեսոր Հուսեյնովը երկրի տարբեր շրջաններ ուղարկեց իր ստեղծած քիմիական նոր պատրաստանյութը և խնդրեց ստուգման ենթարկել։ Միաժամանակ նա հայտնում էր, որ այդ նյութը նպաստում է բույսերի արագ աճին և մինչև 20 տոկոս ավելացնում բերքատվությունը։ Դրանով պարարտացված հողը կարծես արթնացնում է բնության կողմից բույսի մեջ թաքնված ուժերը։ Բույսն արագորեն ձգվում է վեր, դեպի արև. աճելով ոչ թե օրեցօր, այլ՝ ժամ առ ժամ։

Քիմիական այդ նոր պարարտանյութը, որը կոչվում է ՆՐԿ, հասավ նաև Սիբիր։ Պարարտանյութը փորձադաշտ տարան վաղ գարնանը, հենց որ հողն սկսեց չորանալ։ Երիտասարդ գիտնական Նինա Կապկովան, որը ձեռնամուխ էր եղել ՆՐԿ-ի հատկությունների ուսումնասիրմանը, խիստ անհանգստացավ. չէ՞ որ խորհուրդ էր տրվում դրանով հողը պարարտացնել ցանելուց հետո։ Նա իր ուշադրությունը կենտրոնացրեց այդ դաշտի վրա։ Պարարտացումից հետո անմիջապես դուրս թափվեցին մոլախոտերը և սկսեցին արագ-արագ աճել։ Փորձադաշտի աշխատողները հողը մաքրեցին այդ մոլախոտերից և եգիպտացորեն ցանեցին։ Պարզվեց, որ եգիպտացորենն ավելի լավ աճեց, քան առաջ։ Դրանից հետո որոշվեց ցանքից 12—15 օր շուտ հողը պարարտացնել ՆՐԿ-ով, խաբել մոլախոտերին, դուրս քաշել հողից, ոչնչացնել, նոր միայն սկսել ցանքը։

Փորձերը ցույց տվեցին, որ ՆՐԿ-ն շատ լավ է ներգործում ոչ միայն բույսերի, այլև կենդանիների ու թռչունների վրա։ Եթե ՆՐԿ-ն խառնեն կերի հետ, ապա ճագարների, խոզերի և թռչունների օրական աճը կկազմի մինչև 115 տոկոս։ Հետաքրքրական է, որ այդ հրաշագործ նյութն ստացվում է նավթի մնացորդներից։

## Քիմիական քաղհանում

Կան քիմիական նյութեր, որոնք օժտված են զարմանալի հատկություններով։ Մեկը ոչնչացնում է մոլախոտերը և միաժամանակ սնունդ հանդիսանում կուլտուրական բույսերին, մյուսը պայքարում է այգու վնասատուների դեմ և նպաստում ծառերի արագ աճին։

Մեր երկրի փորձադաշտերում և գիտա-հետազոտական ինստիտուտներում փորձարկվեցին ավելի քան երեք հարյուր այդպիսի հերբիցիդներ։ Դրանց մեջ լավագույն գնահատականի արժանացավ կրոտիլինը, որն ըստեղծել են Հայաստանի գիտնականները Վ. Դովլաթյանի ղեկավարությամբ։ Կրոտիլինը լավ արդյունք է տվել մերձմոսկովյան, Սիբիրի և երկրի կենտրոնական շրջանների դաշտերում։ Վերջերս Երևանի Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանում շարք մտավ կրոտիլինի արտադրության երկրորդ տեղամասը, որի շնորհիվ կրկնապատկվել է քիմիական այդ արժեքավոր նյութի արտադրությունը։

# ԱՐՄԵՆԿՈՅԻ ԱՆՈՒՆՈՎ



ԱՐՏԵՄ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ չեխ մարտիկի համազգեստով, պարտիզանական շտաբի բակում: Այս լուսանկարը ստացվել է Չեխոսլովակիայից, Ա. Պետրոսյանի մահից հետո:

Երեխանե՛ր, դուք հավանաբար արդեն լսել եք Արտեմ Պետրոսյանի անունը: Այդ նա էր, որ Հայրենական պատերազմի թեժ տարիներին դեսանտային մի խմբի հետ պարաշյուտով վայրէջք կատարեց թշնամու թիկունքում Չեխոսլովակիայում: Այնտեղ՝ Մորավիայում, դառնալով Յան Կոզինի անվան պարտիզանական ջոկատի հրամանատարներից մեկը, նա չեխ մարտիկների հետ հերոսաբար պայքարեց հիտլերականների դեմ:

Բայց դուք գիտե՞ք, թե ինչպիսին էր պիոներ Արտեմը...

Ես հիշում եմ նրան: Մենք գրեթե մի թաղում էինք բնակվում, Արտեմ Պետրոսյանը սովորում էր № 10 դպրոցում, որը մոտ էր թե՛ մեր, թե՛ իրենց տանը: Երկնագույն, գեղեցիկ աչքերով, մեղմ դիմագծերով մի տղա էր նա: Ամառը կարճ անդրավարտիք էր հագնում, սպիտակ վերնաշապիկ, որից անբաժան էր թրթռուն, կարմիր փողկապը: Արտեմի շատ լուսանկարներն են պահպանված, որոնցից մեկի մասին կպատմեմ: Լուսանկարիչը գունավորել է նրա պատանեկան արտահայտիչ դեմքը, հատկապես ընդգծելով աչքերի կապույտը: Նորից պիոներական համազգեստի մեջ է, իսկ գլխին՝ կոկարդավոր գլխարկ, որին այն ժամանակ «իսպանկա» էին ասում: Լուսանկարի տակ Արտեմը իր ձեռքով ստվարաթուղթ է սոսնձել ու կապույտ, կարմիր մատիտագծերի շրջանակի մեջ առել Հովհաննես Թումանյանի «Թմկաբերդի առումը» պոեմից մի քանի տող.

«Գործն է անմահ, լա՛վ իմացեք,
Որ ապրում է դարեդար,
Երնե՛կ նրան, ով իր գործով
Կապրի անվերջ, անդադար...»

Արմենն այս տողերը արտագրել է 5-րդ թե 6-րդ դասարանում: Տեսնես, ի՞նչ է մտածել նա: Ո՞վ գիտե, գուցե կյանքում հերոսները սուրբ նախազգացո՞ւմ են ունենում: Արտեմը մեծացավ, դարձավ հերոս:

Հետաքրքրասեր էր պատանի Արտեմը, պրպտող, ուշադիր: Նկարում էր, ակորդեոն նվագում, ստեղծագործում, մասնակցում թատերական խմբի փորձերին ու ներկայացումներին: Այսօր էլ դպրոցական ցուցահանդեսում ժամանակից դեղնած ու խունացած մի տետրի մեջ պահպանվել է նրա գրած մի պիեսը:

Արտեմը լավ ընկեր էր, բազմաշնորհ պատանի, առաջադեմ աշակերտ: Բոլորը գիտեն դա: Բայց որ այդ ամենի հետ միասին նա արծվի պես խիզախ սիրտ ուներ, ոչ մեկը չգիտեր... Ես էլ չգիտեի:

Բայց հերոսությունը մի այնպիսի բան է, որի համար գոյություն չունի ո՛չ ժամանակ, ո՛չ էլ տարածություն: Հերոսությունը երգի պես դարից-դար, աշխարհից-աշխարհ կանցնի: Մի օր էլ մեզ հասավ Արտեմի հերոսության լուրը: Բոլորը հիշեցին նրան, ուրախացան, հպարտացան ու լաց եղան: Բայց նա արդեն չկար: Չեխոսլովակիայի Մորավիա շրջանի Օլեշնիցա քաղաքի դպրոցականները իրենց քաղաքի ազատագրության համար մարտնչած հերոս պարտիզանի մասին պատմող նամակները ուղարկեցին նրա որդու հասցեով:

Եվ այսօր, № 10 դպրոցի դասասենյակներից մեկում, ուր տարիներ առաջ սովորել, երազել և ուրախացել է Արտեմը, կա մի նստարան, որն ի պատիվ 1939—40 ուսումնական տարվա շրջանավարտ Արտեմ Պետրոսյանի հիշատակի՝ կրում է նրա պարտիզանական անունը՝ Արմենկո:

Դպրոցի պիոներական դրուժինան և կոմերիտական կազմակերպությունը այդ նստարանին նստելու պատվին արժանացնում են օրինակելի աշակերտներին:

«Սովորել ու ապրել Արմենկոյի պես»: Այսպիսի նշանաբան կունենա նա, ում այսուհետև բախտ կվիճակվի նստել Արմենկոյի նստարանին:

ԼԵՆԱ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Լենինական

## ՀԱՄԵՐԱՇԽ ԵՄ «ՀԻՆԳԵՐԻ» ՀԵՏ

**ՆԻՆԱ ՊԱԼԱՄԱՐՉՈՒԿ**

Բարեկամ եմ «հինգերի» հետ,
Ջէ՞ որ ես էլ եմ պիոներ,
Գիտնական է մեր երկրին պետք,
Պետք է նաև լավ ինժեներ։
Գուցե դառնամ ես շինարար,
Գուցե թռչեմ և տիեզերք,
Դո՛ւք, «երկուսներ», չնչին, հիմար,
Ինձ մոտ ընկնել չըերազե՛ք։

*Թարգմ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ՇԱԽՄԱՏԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Արաբ պատմաբան Ասաֆադը պատմում է, որ Հնդկաստանի Շերամ արքան մեր թվարկությունից 400 տարի առաջ, ցանկանալով շախմատի գյուտարար Սեսսին պարգևատրել, հարցնում է նրան, թե ի՞նչ պարգև կցանկանար։

Սեսսը պատասխանում է՝ «Տուր ինձ այնքա՛ն ցորեն, որքան պետք կլինի, եթե շախմատի տախտակի առաջին քառակուսու վրա դնենք ցորենի 1 հատիկ, երկրորդի վրա՝ 2 հատիկ, երրորդի վրա՝ 4 և այսպես կրկնապատկենք մինչև 64-րդ քառակուսին»։ Պալատական գիտնականների հաշվումներից պարզվեց, որ Սեսսի, առաջին հայացքից համեստ թվացող, պահանջը բավարարելու համար պետք կլինի երկրագնդի մի քանի հարյուրամյակների բերքը։

Շախմատն իր բնույթով այնպիսի խաղ է, որ առաջին քայլից սկսած անսպառ հնարավորություններ է ընձեռում կողմերին։ Որո՞նք են այդ հնարավորությունները։ Սկսելով խաղը, սպիտակները 20 հնարավոր քայլերից (16 քայլ զինվորներինը և 4 քայլ ձիերինը) կատարում են մեկը։ Սպիտակների մեկ քայլից հետո սևերի յուրաքանչյուր քայլը սպիտակների նկատմամբ ստեղծում է 20 դիրքի հնարավորություն։ Այսպիսով երկու կողմերի համար ստացվում է 20·20=400 դիրք ստեղծելու հնարավորություն։ Դիցուք, երկու կողմերի առաջին քայլով արքաների առջևի զինվորները կանգնում են դեմ-դիմաց։ Այդ քայլից հետո 2 կողմերի համար ստացվում է 29 քայլի, կամ յուրաքանչյուր կողմի համար 29·29=841 դիրքի հնարավորու-




թյուն։ Ամեն մի քայլից հետո կողմերին մանևրելու համար բացված «ճանապարհների» թիվը մոտավորապես միջին հաշվով մեծանում է 900 անգամ։ Մինչդեռ շախմատիստը մեծ թիվ կազմող «ճանապարհներից» պետք է ընտրի լավագույնը, իսկ ընտրության համար նրան տրըվում է շատ քիչ ժամանակ՝ 40 քայլի համար 2,5 ժամ։

Հարց է առաջանո՞ւմ, կարելի՞ է խաղի համար նախատեսնել այնպիսի ժամանակամիջոց, որի ընթացքում աշխարհի բոլոր շախմատիստները հնարավորություն ունենան վերլուծության ենթարկելու բոլոր գործողությունները և այդ գործողություններից բխող հետևանքները։ Պարզվում է, որ այդ ժամանակամիջոցը չի կարող լինել ո՛չ ամիսը, ո՛չ տարին և ո՛չ էլ միլիոնավոր և միլիարդ դարերը։

Մենք խոսեցինք միայն գործողությունների, դիրքերի մասին։ Իսկ պարտիաների թի՞վը։ Ասենք, խաղն ավարտվեց 40-րդ քայլում, չէ՞ որ կողմերը խաղացին բոլոր հնարավոր պարտիաներից միայն մեկը։ Բայց քանի՞սն են բոլոր հնարավոր պարտիաները։ Դրանց թիվը շատ մեծ է։ Որպեսզի կարելի լինի որոշակիորեն պատկերացնել պարտիաների թիվը, վերցնենք Բոտվիննիկ—Պետրոսյան մատչի այն խաղը, որն ավարտվել է 15-րդ քայլում։

...Խաղն սկսված է, կողմերի առաջին քայլով դիրքերի հնարավոր թիվը, ինչպես վերևում ցույց տվեցինք, կազմում է 400։ 2 քայլով ստեղծվում է ևս 900 դիրքի հնարավորություն։ Քանի որ առաջին քայլով արդեն ունեինք 400 դիրք, ապա ընդամենը ստացվում է 400 · 900 = 360,000։ Երեք քայլից հետո՝ 400 900 900 և վերջապես 15-րդ քայլից հետո՝ 400·900·900 . . . 900 (900-ը կրկնված 14 անգամ)։

Բավական է ասել, որ 10 քայլով վերջացող խաղի բոլոր պարտիաների թիվը կլինի այնպիսին, որ եթե ամբողջ երկրագնդի ազգաբնակչությունը նստի շախմատի տախտակների շուրջը և

ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Վ. ՍՏԵՅՆԻՑ

Է. ԼԱՍԿԵՐ

# ՇԱԽՄԱՏԻ ԳԾՈՎ ԱՇԽԱՐՀԻ ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ

Խ. ԿԱՊԱԲԼԱՆԿԱ

Ա. ԱԼՅՈԽԻՆ

Մ. ԷՅՎԵ

Մ. ԲՈՏՎԻՆՆԻԿ

Վ. ՍՄԻՍԼՈՎ

Մ. ՏԱԼ

խաղա ամբողջ օրը, յուրաքանչյուր վայրկյանում կատարվի մեկ քայլ, ապա 10 միլիարդ տարի է պետք՝ բոլոր պարտիաները խաղալու համար:

Բելգիայի մաթեմատիկոս Մ. Կրայչիկը, հաշվելով պարտիաների թիվը 40 քայլից հետո, գտել է, որ նույն պայմաններում հարկավոր է այնքան դար, որ արտահայտվում է 1-ով և նրան հաջորդող 100 հատ զրոներով:

Դուրս է գալիս, որ հսկա օվկիանոսից շախմատիստը 4 կամ 5 ժամում կամ 10 ժամում վերցնում է կաթիլի չնչին մասը:

Վերցնենք Բոտվիննիկ—Պետրոսյան մատչի 19-րդ հետաձգված պարտիան:

Ինչպես երևում է, Բոտվիննիկն ունի 28 քայլի, իսկ Պետրոսյանը 25 քայլի հնարավորություն:

Մինչև պարտիայի ավարտը կողմերը կատարեցին 26 քայլ.

Միայն վերջին 26 քայլի ընթացքում հնարավոր բոլոր պարտիաների թիվը կլինի՝ 625·10·10·...·10 (10-ը կրկնած 25 անգամ): Վերապահում անելով այն, որ խաղի ընթացքում կատարվում են փոխանակումներ և կողմերը միջին հաշվով ունենում են 10 քայլի հնարավորություն, ստացված վերջին թիվը նույնպես շատ մեծ թիվ է: Այդ հետաքրքիր խաղն ավարտվեց Պետրոսյանի հաղթանակով: Բայց արդյոք Բոտվիննիկը տնային վերլուծության ընթացքում մի քանի ժամում կարո՞ղ էր նկատել բոլոր հնարավոր տարբերակները. իհարկե, ո՛չ:

Միջազգային գրոսմեյստեր Ա. Լիլիենթալը խաղից հետո հայտնեց այն միտքը, որ «... եզրափակիչ մասում հավակնորդը էֆեկտիվ և ճշգրիտ խաղով կարողացավ խուսափել «կուլիսների հետևում» գտնվող բազմաթիվ վտանգներից՝ տեսական ոչ-ոքիի տարբերակներից, որոնք կարող էին ստեղծվել սևերի փղի զոհաբերությամբ»:

Գրոսմեյստերի այս ենթադրությունը կարելի կլիներ իրագործել, եթե խաղի բոլոր հնարավոր պարտիաները ենթարկվեին մանրամասն վերլուծության, իսկ դրա համար պետք է մեծ ժամանակամիջոց:

Դե, ուրեմն, հեշտ չէ շախմատիստի վիճակը՝ առաջարկվում է նավ, հսկա օվկիանոս, սուղ ժամանակ, բայց պահանջվում է ընդերքից հանած «անգին քարերով» տուն վերադառնալ:

Ինչպիսի՞ արագությամբ պետք է վարել նավը. «աշխարհագրական ի՞նչ լայնություններում», որպեսզի հնարավոր լինի խուսափել ամեն տեսակի անակնկալից:

Ժ. Մնացականյան
*Հոկտեմբերյանի շրջանի Մրգաշատի միջնակարգ դպրոցի մաթեմատիկայի դասատու*

## ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ






*Խնդիր № 2: Մատ 2 քայլից:*




*Խնդիր № 4: Մատ 3 քայլից:*




*Խնդիր № 1: Մատ 2 քայլից:*




*Խնդիր № 3: Մատ 3 քայլից:*




*Խնդիր № 5: Մատ 3 քայլից:*

*Կազմեց՝ Ռ. ՕԼԹԵՑՅԱՆ:*





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այս համարի հետ
տրվում է անվճար
հավելված՝ նոյ-
տեմբերիկների
համար:



## ԶԱՐՄԱՆԱԼԻ ԺԱՄԱՑՈՒՅՑԸ

Ինչ-որ մի տանից շտապ կարգով ժամագործ կանչեցին։

— Ես հիվանդ եմ և չեմ կարող գալ, — պատասխանեց ժամագործը։ — Բայց եթե բարդ վերանորոգում չէ, ես կուղարկեմ իմ աշակերտին։

Պարզվեց, որ հարկավոր էր միայն փոխել ջարդված սլաքները։

— Իմ աշակերտը կարող է այդ անել, — ասաց վարպետը։ — Նա կստուգի ձեր ժամացույցը և համապատասխան սլաքներ կդնի։

Աշակերտը շատ բարեխղճորեն աշխատեց և, երբ ժամացույցի ստուգումը ավարտեց, արդեն մթնել էր։ Ավարտած համարելով աշխատանքը, նա արագ-արագ սլաքները ամրացրեց տեղը և ուղղեց իր ժամացույցի հետ. մեծ սլաքը դրեց 12-ի, իսկ փոքրը՝ 6-ի վրա (երեկոյան ժամը վեցն էր)։

Բայց աշակերտը նոր էր վերադարձել արհեստանոց, երբ հեռախոսը զնգաց։ Տղան վերցրեց լսափողը և լսեց հաճախորդի բարկացած ձայնը.




Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 12143։ Պատվեր՝ 2082։ Տպաքանակ՝ 17.500։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 30/XII 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91։

Գինը 20 կ.




— Դուք վա՛տ եք նորոգել ժամացույցը. սխալ է աշխատում:

Վարպետի աշակերտը շատ զարմացավ և շտապեց հաճախորդի մոտ: Երբ նա եկավ, իր վերանորոգած ժամացույցի սլաքները ցույց էին տալիս ժամը ութից քիչ անց: Աշակերտը հանեց իր գրպանի ժամացույցը և ցույց տվեց:

— Խնդրե՛մ,— ասաց նա, նայեք, ձեր ժամացույցը ոչ մի վայրկյան ետ չի մնում:

Ապշած հաճախորդը ստիպված էր համաձայնվել, որ իր ժամացույցը այդ պահին իսկապես ճիշտ էր ցույց տալիս ժամանակը:

Բայց հետևյալ առավոտ հաճախորդը նորից զանգահարեց և ասաց, որ ժամացույցի սլաքները երևի գժվել և իրենց ուզածի պես զբոսնում են թվատախտակի վրա: Վարպետի աշակերտը վազեց հաճախորդի մոտ: Սլաքները ցույց էին տալիս ժամը յոթից քիչ անց: Ստուգելով իր ժամացույցի հետ, նա շատ խիստ բարկացավ.

Ծիծաղո՞ւմ եք ինձ վրա, ի՞նչ է: Ձեր ժամացույցը ճիշտ է աշխատում:

Ժամացույցը իսկապես ցույց էր տալիս ճիշտ ժամանակը: Վարպետի վրդովված աշակերտը ուզեց գնալ, սակայն տերը չթողեց: Եվ մի քանի րոպեից հետո նրանք գտան այդ զարմանալի «հրաշքի» պատճառը:

Արդյոք դուք չգուշակեցի՞ք, թե ինչ էր պատահել:

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 10

«ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ» — 1. Աֆանաս: 2. Ագավա: 3. Արայի: 4. Արալի: 5. Աթենք: 6. Ակնոց: 7. Արգոն: 8. Արմավ: 9. Անգարա: Գաղտնագիրը՝ Սայաթ-Նովա:

«ՌԵԲՈՒՍ» — Գիր սիրե, դալամ սիրե, դավթար սիրե: Հեղինակը՝ Սայաթ-Նովա:

«ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ» — 1. Ասեղով ջրհոր չես փորի: 2. Ամենավատ թանաքը ամենալավ հիշողությունից լավ է: 3. Կրկնությունը գիտության մայրն է:

«ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ» — 1. Ծառ: 2. Ասվեր: 3. Օդ: 4. Դագ: 5. Շախմատ: 6. Կատուն ու այծը: 7. Ջուր: 8. Քամի: 9. Սիրտ:

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

*Գոհար Սիմոնյանը, Սամվել Սիմոնյանը, Մարինա Թելունցը (Երևան), Աիդա Բեգլարյանը, Մայրանուշ Եղիազարյանը (Հոկտեմբերյան), Օֆելյա Սաֆարյանը (Լենինական), Անահիտ Կիրակոսյանը (Արտաշատ), Համլիկ Հայրապետյանը (Աշտարակ), Սլավիկ Բաբայանը (Եղեգնաձոր) և ուրիշները:*



Պատանի ժամանակ ո՞ւմ չեն գերել Մայն Ռիդի, Ժյուլ Վեռնի և աշխարհահռչակ մյուս գրողների հրաշապատում գրքերը։ Կարդում ես ու մտքով փոխադրվում Արկտիկայի սառույցների մեջ, բարձրանում հսկա լեռները, իջնում օվկիանոսների հատակը, սավառնում տիեզերական տարածություններով, վայրէջք կատարում հեռավոր մոլորակների վրա։ Պակաս հափշտակությամբ չեն կարդացվում նշանավոր ծովագնացների և ճանապարհորդների գրվածքները։ Շատ պատանիներ այդ գրքերի ազդեցության տակ նույնիսկ ստվարաթղթից նավակներ են սարքում և «դուրս գալիս» հեռավոր ճանապարհորդության, որ նոր-նոր երկրներ հայտնագործեն, ընկնեն հետաքրքրական արկածների մեջ, փղեր, առյուծներ ու վագրեր որսան... Պատանիներ էլ կան, որ ափսոսանքով ասում են. «Շուրջերկրյա ճանապարհորդությունները կատարված են արդեն, տեղի են ունեցել աշխարհագրական մեծ հայտնագործությունները, քարտեզների վրա տեղադրված են բոլոր մայր ցամաքներն ու կղզիները, էլ ի՞նչ կարող ենք անել մենք։ Ափսո՜ս, որ շուտ չենք ծնվել»։

Պատանության տարիներին գուցե այդպես են մտածել նաև Լիվինգստոնը, Պրժևալսկին, Օբրուչևը և շատ ուրիշ նշանավոր մարդիկ։ Բայց այդ ամենից հետո էլ նրանք թափանցեցին Աֆրիկայի խորքերը, հետազոտության վայր ընտրեցին Կենտրոնական Ասիայի անապատներն ու ցուրտ Հյուսիսը։ Ռուս ճանապարհորդ Պրժևալսկին անցավ այնպիսի վայրերով, որտեղ եվրոպացի ոչ մի գիտնական ոտք չէր դրել։ Նա կտրեց մոտ 30.000 կիլոմետր տարածություն և կազմեց իր հետազոտած տեղանքի քարտեզը, գրքեր գրեց Ասիայի բնության ու բնակիչների մասին, բույսերի հազարավոր նմուշներ հավաքեց, հայտնաբերեց նոր տեսակի կենդանիներ՝ վայրի ձի, վայրի ուղտ և այլն։

Հյուսիսային սառուցյալ օվկիանոսը, որի մեծ մասը ծածկված է սառույցով, վաղուց գրավել էր գիտնականների ուշադրությունը։ Չէ՞ որ այդ օվկիանոսը շատ առեղծվածներ է թաքցնում իր խորքում։ 1937 թվականի մայիսին Հյուսիսային բևեռի մոտ վայրէջք կատարեցին սովետական 4 բևեռախույզներ։ Նրանք հիմնեցին «Հյուսիսային բևեռ-1» հետազոտական կայանը և գրեթե մեկ տարի ապրելով լողացող սառույցի վրա, մեծ չափով հարստացրին գիտությունը։ Այժմ այնտեղ գործում են ուրիշ «Հյուսիսային բևեռ» կայաններ։ Ո՛չ բուքը, ո՛չ սառնամանիքը և ո՛չ էլ շաբաթներ տևող գիշերները չեն կանգնեցնում հետազոտական աշխատանքները։

Սովետական գիտնականները խիզախում են ամենուրեք, նվաճում միջմոլորակային տարածու-